տովորութեան: Պէտք է վերջ տալ անոր ու հասցէ ծածկելու այս նեղմտութեան:

** Ուրիշ նամակագիր մը, որ մեզի ծանօթ է, կը գրէ Քաշանէն.— Սիրելի «Ցառաջ», իմ աշխատած տանս պաշտօնէութիւնը, այս շաբթուան ընթացքին սկսաւ մասնաւոր խնդրագիր ներկայացնել, իրենց բնակութեան մօտիկ կայարանի տեսչութեան, ստանալու համար մասնաւոր տոմսակ մը, որ 40 առ հարիւր զեղչ կ'ապահովէ իւրաքանչիւր աշխատաւորի, դէպի գուասն ճամբորդութեան համար (արձակուրդ): Ես ալ ներկայացուցի բարեկամի մի միջոցաւ, Քաշանի կայարանի տնօրէնին: Կայարանին պաշտօնեան բարեկամիս ցոյց տուած է ցանկ մը, ուր նշանակուած են զանազան ազգութիւններ, բայց Հայը չէ արձանագրուած: Բարեկամս չափազանց յուզուած՝ բացատրած է Հայերու ծառայութիւնը դաշնակիցներու բանակին մէջ եւ մեր քաղաքական բացառիկ հանգամանքը: Պաշտօնեան ցաւելով հանդերձ ըսած է.— «Ոչինչ կարելի է ընել՝ քանի որ Հայերու անունը չէ արձանագրուած ցանկին մէջ»:

Այս պարագան կը յանձնեմ երկու Օֆիսներու լուրջ ուշադրութեան, որպէսզի գոնէ այսքան տարրական իրաւունքներէն չզրկուի հայ աշխատաւոր:

## Լոնտոնի Կայս. Ժողովը եւ միջազգային կացութիւնը

Բրիտանական կայսրութեան խորհրդաժողովի առաջին նիստին մէջ, վարչապետ Պ. Պոլտուին բացատրեց թէ Մեծն Բրիտանիա հարկադրուած էր վերազինուիլ: «Մեր ժողովը տեղի կ'ունենայ այնպիսիատեն մը երբ միջազգային կացութիւնը մասնաւորապէս տաժանելի է, չըսելու համար սպառնալից: Մեր պարտականութիւնն է քննել միջազգային կացութեան անհաստատութեան պատճառները, կարծիքներ փոխանակել եւ միջոցներ գտնել ցրտութեան պատճառները հեռացնելու կամ նուազեցնելու համար»:

Քանատայի վարչապետը բաղդատելով կայսրութեան եւ ուրիշ պետութեանց ընկերային կարգուսարքը, յայտարարեց թէ բրիտանական ժողովուրդները չեն կրնար կասկածիլ իրենց խորհրդարանական եւ ժողովրդապետական կարգուսարքին արդիւնաբերութեան մասին: Աւստրիոյ վարչապետը շեշտեց թէ իր անծայրածիր երկրին ժողովուրդը հետզհետէ աւելի կը հետաքրքրուի միջազգային քաղաքականութեամբ, որովհետեւ կ'ըմբռնէ թէ այլ եւս ոչ մէկ երկիր կրնայ բաւել ինքն իրեն:

Խորհրդաժողովը չորեքշաբթի օր պիտի զբաղի կայսրութեան պաշտպանութեան վերաբերեալ խնդիրներով:

## Զօր. Կէօրինկ Վենետիկի մէջ

Գերմանիոյ օդանաւային նախարարը Վենետիկ հասաւ նշանակուած ժամանակէն 24 ժամ առաջ: Աւստրիայէն անցած ատեն Գերմանացիներ խռնուած էին կայարան մը եւ անհամբեր կը հարցնէին.— «Ո՞ւր է Առաջնորդը»: Զօր. Կէօրինկ պատուհանէն երեւալով յայտարարեց թէ Առաջնորդը (Հիթլէր) կառախումբին մէջ չի գտնուիր: Իբրեւ թէ աւելցուցած ըլլայ,— «Բայց պիտի գայ»:

Զօրավարը շարք մը տեսակցութիւններ պիտի ունենայ Իտալիոյ վարիչներուն հետ: Այս առթիւ նորէն զրոյց կը շրջի թէ միասին Գերմանիա պիտի տանի Մուսոլինին եւ կամ անոր պիտի յանձնէ Հիթլէրի հրաւէրը, այցելութեան մը համար:

Իտալական թերթերը կը շարունակեն մոլտալ Անգլիոյ դէմ, իսկ Պերլինի մէջ ձգտում մը կը տեսնուի աւելի մօտենալու Անգլիոյ:

## Սափրիչներու գործադուլը Փարիզի մէջ

Սափրիչ բանուորներու գործադուլը կը շարունակուի տակաւին, մտահոգութեան մատնելով մասնաւորապէս ... տիկիններն ու օրիորդներ: Տեղական թերթ մը սրամտօրէն գիտել կուտայ թէ կիները այսքան իրար անցած պիտի չըլլային, եթէ ուտելիքի բանուորները գործադուլ ըրած ըլլային: Ո՞վ պիտի շտկէ մազերը, ո՞վ պիտի յղկէ նրկէ եղունգները: Շատերուն համար այս վերջինը աւելի կարեւոր էր: Օփերայի հրապարակին վրայ տիկին մը փորձեց կաշառել սափրիչ մը, որպէսզի նախապատուութիւն տայ իրեն, վախնալով որ խանութը կը փակուի:

Առջի օր շարք մը դէպքեր պատահեցան, գործադուլին առթիւ: Բանթողները խմբակներ կազմելով, կ'երթան կը սպառնան այն վարպետներուն որ բացած են իրենց խանութները: Թէեւ ոստիկաններ կը հսկեն, բայց յաճախ ապակիներ կը ջարդուին եւ յարձակումներ կը կատարուին: Հարիւրաւոր բանուորներ ալ ձրի կ'ածիլեն անցորդները, ի հեճուկս վարպետներուն: Փողոցներու մէջ կ'երեւան նաեւ շրջուն սափրիչներ:

Վարպետները տեղի տալ չեն ուզեր: Աջակողմեան թերթերը կը գրեն թէ գործադուլը ձախողած է, խանութներու 85 առ հարիւրը բաց մնացած ըլլալով: Վարպետները կ'առարկեն թէ բանթողները խախտած են պարտաւորիչ իրաւարարութեան պայմանը եւ անընդունելի կը գտնեն անոնց պահանջը՝ միայն սէնտիքայի անդամ բանուորներ վարձելու մասին:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԵԱՆ շաբաթական տեղեկագրին համաձայն, մայիս 8ին արձանագրուած նպաստընկալ գործազուրկներու թիւն էր 363.569, որոնց 263-072ը այր, 100.497ը կին: Անցեալ շաբթուան վրայ պակսած է 4812 հոգի, իսկ անցեալ տարուան միեւոյն շաբթուան հետ բաղդատելով՝ 77,545 հոգի:

ՀԱԿԱՀՐԷԱԿԱՆ ԾԱՆՐ դէպքեր պատահեցան Լեհաստանի մէջ: Հրեայ մսավաճառ մը սպաննած ըլլալով օրինազանցութեան մը առթիւ զինքը հարցաքննող ոստիկանը, ամբոխը յարձակում գործեց եւ աւարի տուաւ 100ի չափ խանութներ, Պրէց քաղաքին մէջ: Հարիւր հոգի ձերբակալուեցան:

ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐ Պ. Իվօն Տէլպոս վերադարձաւ Լոնտոնէն, ուր շատ կարեւոր տեսակցութիւններ ունեցած էր Անգլիոյ վարչապետին եւ միւս նախարարներուն հետ:



Լիոնի «Ցառաջ»ի ամենօրեայ յաճախորդներուն ներողութիւն կը խնդրենք որ միւսանգամ երկու թերթը հաստատաւ իրենց թեթեւութեան ցրուումը անցեալ շաբաթ տեղի ունեցած անկանոն:

Լիոնի «Ցառաջ»ի գործակալ ՒՐԱՆԿ ԿԵՆՃԵԱՆ

ՖՐԱՆՍԱՅԻ ՌՈՒՍ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ (52 rue Regnault, Paris (13) կը ծանուցանէ թէ Միջազգային Ցուցահանդէսի մնայուն վարձու կառայից ... համար ... դիմել ...:

| | |
|---|---|
| 1 օրուան համար | 10 ֆր. |
| Շաբաթը | 60 ֆր. |
| Ամիսը | 110 ֆր. |
| Կը տրուի նաեւ ամառ ժամ | 4.50 |

Ֆրանկը զաշարանի տէօրէն ... 




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13)


26 ՅՈՒՆԻՍ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ

ՍԵՆՓՈՐԻԿ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ԱՐԱՑ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

իրենց կիրակի օրուան խումբը չորս լաւագոյն մարզիկներով որոնց մէջ կը նշմարուէր նոյն իսկ համբաւաւոր «փրոֆէսիոնէլ» մարզիկ մը, թէեւ մեր մարզիկները արիաբար դիմադրեցին, բայց վերջին պահուն պարտուեցան 4—2ով:

Հ. Մ. Ը. Մ.ը մասնաւորաբար իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ Իսի լէ Մուլինոյի եւ Պիյանքուրի մարզասէր հայ հասարակութեան որ երկու օր, կիրակի եւ երկուշաբթի իր ներկայութեամբ նիւթապէս եւ բարոյապէս քաջալերեց անոր կազմակերպած մարզահանդէսը:

Նաեւ յատկապէս Պ. Կիւլպէնկ Ասլամեանի, որ իր անձնուիրութիւնըցոյց տուաւ խաղի ամենակարեւոր միջոցին ինքնաբերաբար գետը նետուելով ջուրը ինկած գնդակը քաջութեամբ յանձնեց մարզիկներուն, ինչ որ բոլոր ներկաներուն մեծ գնահատանքին արժանացաւ:

Մ. Երամեան

# ՄԱՄՈՒԼ

## ՈՂԲԱԼԻ ՊԱՏԿԵՐ

Պուէնոս Այրէսի «Արմենիա»ն կ'ողբայ խմբագրականի մը մէջ (23 ապրիլ).

— Որ եւ է գործ միշտ լաւ կը սկըսինք, բայց դէշ կը վերջացնենք: Մեր ազգային նկարագրի յոռեգոյն կողմերէն մէկը, որ կարծես անդարմանելի կը մնայ:

Մեր դպրոցներէն ոմանց դէշ վերջաւորութիւնը մեզ կը սորվէ նորէն անդրադառնալ դպրոցական հարցին:

Ինչպէս յայտնի է, ասկէ մօտ տասը տարի առաջ հիմնադրուեցան մեր առաջին թաղական դպրոց - խրճիթները, որոնց թիւը հետզհետէ աւելցաւ եւ այսօր Պուէնոս Այրէսի եւ արուարձաններուն մէջ ունինք 16 դպրոցներ: Անշուշտ, դպրոցներու բազմացման եւ ճիւղաւորման մէջ աւելի մեծ դեր խաղացին հայկական մոլեգին կիրքն ու եսականութիւնը, քան բարի նախանձը եւ կրթասիրութիւնը:

Ժամանակ մը դպրոցներու շուրջը եղած հակամարտութիւններն ու կիրքերը այնքան լարուեցան, որ դպրոցները կոտորուեցան եւ բաժնուեցան, մնալով նոյն թաղամասի եւ գրեթէ միեւնոյն փողոցի վրայ, պահելով նաեւ իրենց անունները:

## ՕՐ. ՆՈՒԱՐԴ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

եւ

## Պ. ԱԲՐԱՀԱՄ ԱՍԼԱՆԵԱՆ

Նշանուած

17 Մայիս 1937, Սէն Շամոն

Ուրեմն, կը պարզուի, որ մեր դպրոցներուն գոյութիւնը եւ յարատեւութիւնը բացառապէս կախուած է եղեր մեր հակամարտութիւններէն եւ մոլեգին կրքերէն:

Սակայն, աւելի ողբալին կայ, միանգամայն չնախատեսնուած: Նախապէս դպրոցները սեփական շէնքեր չունենալով ամփոփուած էին վարձու տուներու եւ շէնքերու մէջ:

Ցետագային եւ տարիներու ընթացքին, աճագին զոհողութիւններով, թաղեցիները սեփական հողեր գնեցին եւ անոնց վրայ բարձրացուցին սեփական դպրոցի շէնքեր ամսավճարով:

Մրցութեանց պատճառով եւ իրար աչք տալով, դպրոցներէն ոմանք արդէն իրենց պարտքը լրիւ վճարած են կամ վճարելու մօտ են, որով դերծ են կալուածատիրոջ դրաւումէն: Կան ուրիշներ ալ, որոնք հազիւ կրցած են վճարել իրենց պարտքին կէսը եւ մօթէն կը շարունակեն տալ, բայց գըրեթէ յուսահատ: Կան աւելի ուրիշներ, որոնք աւարտելու վրայ են իրենց պարտքը, ինչպէս ամսական կանոնաւոր վճարելով, ու մնացած է միայն

## « ՀԱՅԵՐՆ ՈՒ ՔԻՒՐՏԵՐԸ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ»...

Պէյրութի «Էլ Նիտա», որ երկարատեւ դադարէ մը վերջ սկսած է իր վերհրատարակութիւնը, խօսելով լիբանանեան հպատակութեան նոր օրինագծի մասին, կը գրէ.—

... Լիբանանեան կառավարութիւնը

...

մեր երկրին, պայմանաւ սակայն որ սահմանափակուած ըլլայ:

... Դիտել տանք, ի դէպ, թէ այդ օտար տարրերը միշտ չարաղէտ եղած են ո եւ է ազգային շարժման համար (Սուրիոյ կամ Լիբանանի մէջ): Արդարեւ Չէրքէզներն է որ, Սուրիոյ մէջ, զօրեցին սուրիական ապստամբութիւնը, իսկ Լիբանանի մէջ Հայերն ու Քիւրտերը եղան գլխաւոր պատասխանատուները Պէյրութի նոյեմբերեան վերջին խռովութեանց ...:

## ՍՏԱՑԱՆՔ

ԲՈՒՐԱՍՏԱՆ, պատանեկան եւ մանկական ամսագիր, Ա. տարի թիւ 1. մայիս 1937: Տարեկան բաժնեգին 15: Արտասահման՝ 20: Հատը 1.50 Ֆր.: Խմբագիր - հրատարակիչ Յ. Տավօեան 4, Rue de la Trémoille, Paris (8):

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔԱՄԻՆ ԿԸ ՓՉԷ ՄՈՍԿՈՒԱՅԷՆ ԵՒ ԵՐԵՒԱՆՑԻՔ ԵՂԷԳԻ ՊԷՍ ԿԸ ԽՈՆԱՐՀԻՆ

Փոթորիկը կը շարունակուի: Մոսկուայէն՝ քամին կը փչէ անընդհատ, եւ Երեւանի մէջ ամէն մարմին, կուսակցական թէ պետական, կուրծք կը ծեծէ մեղայականելով:

Ամէն օր հաւաքոյթ կայ Երեւանի մէջ: Պետական մարմինները հարկադրուած են հրապարակաւ խոստովանիլ իրենց գործած եւ չգործած մեղքերը: Ո՞վ աւելի շատ «մեղայ» կանչէ, ան միայն կը մնայ իր աթոռին վրայ եւ իր ... ընտանիքին մէջ,— այլապէս՝ դէպի անծանօթ ուղղութիւն:

Քրտնելու կարգը, Ապրիլ 17—22, կրթական գործավարութեան էր եկած: Կրթական գործավարը, Լ. Աբխեան, անդամ մը կրթ. գործավարութեան ...

...

բարձրացաւ կրթ. գործավարութեան աթոռին վրայ: Իր զեկոյցին մէջ, Ապրիլ 17 - 22 ժողովներուն, յարձակեցաւ «երկերեսանի նացիոնալիստ Խանջեան»ի հովանաւորած «հակա-

...

անդամներն են Ա. Զօպանեան, նախագահ, Լեւոն Բաշալեան, ընդհանուր քարտուղար, Արամ Ինճիճեան, անօրէն Հայ Գաղթ. Գրասենեակին, Լեւոն քհյ. Արսլանեան, Ա. Թէրզիպաշեան, Արամ Ճիմպլիշեան, Մատթէոս Նալպանտեան, Յակոբ Սարաճեան եւ Զարեհ Սրապեան:

Կը խնդրենք որ հաճիք համաժողովին գումարումէն առնուազն մէկ ամիս առաջ մեզի հաղորդել ձեր որոշումը եւ պատուիրակներուն անունը:

...

«մերկացուած եւ ջախջախուած (Երե-

...



# ՋԱՐԹՕՆՔ

## (ՎԷՊ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԵԱՆՔԷ)

Դեռ երկար Ալմաստ մօրքուրը կը շարունակէր անիծել ապուրաց Գրիգորը, որ ծեծի չդիմանալով՝ գէնքերու տեղը ցուցուցած էր, մինչ Լեւոնը եւ ընկերները կողք կողքի երկնցած՝ կը քնանային պարտասած մարդու անխռով քունով:

Յաջորդ օրը առանց պատահարի անցաւ: Մթնելուն մեր բարեկամները Յովակ աղօր առաջնորդութեամբ աննկատելի կերպով դուրս եկան գիւղէն, իրենց հետ տանելով Ալմաստ մօրքուրի արտասուրը աղօթքները եւ ջերմագին մաղթանքները: Երբ հասան դէպի Կուսուպաչ տանող ճանապարհը, ջերմօրէն սեղմեցին Յովակ Աղօր ձեռքը ու արագ քայլերով կորան խաւարի մէջ:

Այդ գիշեր թէեւ երկար ճանապարհ ...

տանդաւոր էր որ եւ է հայկական գիւղ մտնել, առանց նախօրօք անոնց տրամադրութեանը ծանօթանալու:

Քաղաքի մօտ Կուսուպաչ եւ Ծուչանց գիւղերը կային, լաւ կազմակերպուած գիւղեր, բայց չէ՞ որ Կէմն ու Բերդակն ալ կազմակերպուած էին, խանդավառ երիտասարդ ընկերներ ունէին այդ տեղերու մէջ. ի՞նչ երաշխիք որ Կուսուպաչն ու Ծուչանցը պիտի ընդունէին զիրենք:

Իսկ եթէ չընդունէի՞ն:

— Տղաք, քանի մը րոպէ նստինք ու մտածենք մեր ընելիքի մասին, — առաջարկեց Լեւոնը:

Երեքով միասին նստան ճամբու եզերքը, սառած ձիւնի կոշտերու վրայ:

— Է, հիմա ո՞ւր պիտի երթանք,— ընկերները ճակատելով հարցուց Լեւոնը ...

Թեան նախագահին, իբրեւ պատասխան.— «Ցանաստանի բանակին, նաւատորմին եւ օդատորմիղին ներկայացուցիչները, որոնք ներկայ են մեր ճաշին, իրենց անհուն ուրախութիւնն ու խաղաղասիրութիւնը կը յայտնեն Թուրքիոյ նախագահին խօսքերուն առթիւ»:

Թուրքիոյ վարչապետը եւ հետեւորդները յետոյ մեկնեցան: Շոգենաւին մէջ ողջերթ մաղթելու գացած էին բոլոր այն անձնաւորութիւնները որոնք զինքը դիմաւորած էին Աթէնքի կայարանը հասած ատեն:

## Տորիոյի պաշտօնանկութիւնը

Ներքին նախարարը պաշտօնանկ հռչակեց Սէն Տընիի քաղաքապետը, Տօրիօ, որուն գործառնութեանց մասին քննութիւն բացուած էր անցեալ դեկտեմբերին: Պաշտօնանկութիւնը հաղորդուեցաւ Սէնի նահանգապետին միջոցաւ: Ներքին նախարարութեան մէջ կ'ըսեն թէ այս պաշտօնանկութիւնը որ եւ է քաղաքական հանդամանք չունի, այլ հետեւանք է հետեւեալ վարչական պատճառներուն.— 1. Անկանոն աճուրդ ածուխի եւ ելեկտրական լամբարներու.— 2. Ապրանքներ յանձնուած են որոնք չեն համապատասխաներ ոչ տետրակներու մէջ արձանագրուած տեսակին, ոչ ալ վճարուած քանակին: Այս առթիւ կատարուած քննութեան թղթածրարը հաղորդուած էր Տորիոյի, բայց բացատրութիւնները բաւարար չեն համարուած: Ներքին նախարարին վճիռը անվերաքննելի է: Տօրիօ չի կրնար քաղաքապետ ընտրուիլ մէկ տարիէն առաջ եւ արդէն փոխանորդ մը նշանակուած է:

Տօրիօ լսելով իր պաշտօնանկութիւնը, յայտարարեց թէ եղածը քաղաքական պայքար մըն է: «Ես երբեք չեմ խուսափած ո եւ է մէկուն հետ կռուելէ, եւ կ'ընդունիմ պայքարը»:

Ինչպէս կը յիշուի, Տօրիօ Թունդ համայնավար էր երբեմն եւ վարած է բազմաթիւ պատասխանատու պաշտօններ, բայց վտարուեցաւ, մերժած ըլլալով հլու հնազանդութեամբ համակերպիլ Մոսկուայի հրամաններուն: Այժմ նախագահն է Ֆրանսայի Ժողովրդական Կուսակցութեան եւ երկուշաբթի օրէն վեր կը վարէ «Լա Լիպէռթէ» օրաթերթը, բուռն պայքար մղելով Ժողովրդական Ճակատին եւ համայնավարութեան դէմ, յանուն «Ազատութեան Ճակատ»ի: Դեռ լեզու չէ գտած գնդ. Տը լա Ռօքի հետ, թէեւ երկուքն ալ նոյն պայքարը կը մղեն:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՈՒԿՈՍԼԱՎԻՈՅ խնամակալ իշխանը Լոնտոնէն Փարիզ հասնելով, առջի օր ճաշի հրաւիրուեցաւ Էլիզէի պալատին մէջ: Այցելութիւնը քաղաքական հանդամանք չունի, եւ սակայն պիտի ծառայէ սերտացնելու երկու երկիրներուն յարաբերութիւնները: Անշուշտ խօսակցութիւններ պիտի կատարուին օրուան հարցերու մասին:

Պ. ՊՈԼՏՈՒԻՆ, Անգլիոյ վարչապետը, չորեքշաբթի օր նախագահեց նախարարական վերջին ժողովին: Նախորդ օրը Թագաւորը ճաշի գնաց վարչապետարան, քանի որ առաջին անգամ տեղի կ'ունենայ 26 տարիէ ի վեր: Այսօր, ուրբաթ, վարչապետը վերջնապէս հրաժարելով, պիտի կոչուի լորտ Պօլտուին Պիւտլի:

ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԲԵՒԵՌԻ մէջ հաստատուած չորս մասնագէտներուն ուտելիք, հագնելիք, գործիքներ նետ. հասցնելու համար, մայիս 26ին 23 հոգի ճամբայ ելան երեք խորհրդային օդանաւերով: Օդանաւերէն երկուքը ցամաք իջան, բայց երրորդէն լուր չկայ տակաւին:

ԻՆՔՆԱՇԱՐԺՆԵՐԸ անդադար կ'աճին Եթովպիոյ մէջ: Պատերազմէն առաջ միայն 200 օթօ կը գտնուէր Ատիս - Ապէպայի մէջ, այժմ կը հաշուեն 8700, որոնց 6900 բեռնակառք:

ՍՊԱՆԻՈՅ ԱՊՍՏԱՄԲՆԵՐԸ ֆրանսական օդանաւ մը վար առին, հետապնդելով ութ օդանաւերու միջոցաւ. Երեք հոգի վիրաւորուեցան: Ֆրանսական օդանաւը կ'երթեւեկէր Պայոնէն Պիլպաօ, ծովային հաղորդակցութեանց խզումէն ի վեր: Ապստամբները նոր յարձակողականի մը կը պատրաստուին Պիլպաոյի դէմ:

ՊԱՂՏԱՏԷՆ կը հեռագրեն թէ նախկին սպայ մը սպաննեց պետական կալուածներու ընդհ. վերատեսուչը, Ապտիւլ Գատէր Սինայի:

ԱԼՊԱՆԻԱԿԱՆ կառավարութիւնը կը տեղեկացնէ թէ ապստամբներուն հրամանատարը, Էթհէմ Թոթօ, երբեմն ներքին նախարար, պաշարուելով բռնկեցաւ գիւղի մը մէջ: Հեռագիրը կ'ըսէ թէ Թոթօ քաջաբար կռուեցաւ, մինչեւ որ գնդակ մը ծակեց սիրտը: Ուրիշ մըն ալ սպաննուեցաւ, իսկ միւսները անձնատուր եղան:

## Դասախօսութիւն

**Ց. Կ. Խաչի Փարիզի Մասնաճիւղին երրորդ դասախօսութիւնը**
30 մայիս, կիրակի երեկոյ ժամը 9ին,
8 rue Bossuet, փարիզ. Բարեգործականի ցան մէջ:
**Կը դասախօսէ ՀԱՅՐ ՍԱՀԱԿ**
Նիւթ՝ Հայ կնոջ դերը ընկերութեան մէջ:
Մուտք 3 ֆր. (օգարակ եւ խմորեղէն միասին):

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

կազմակերպուած Հայ կամ. եւ Մարտիկներու Միութեան Տէսինի Մասնաճիւղին կողմէ
29 մայիս շաբաթ երեկոյ ժամը 7ին, Հ. Յ. Դ. ցան սրահին մէջ:
**Կը խօսի՝ ԳՆԴ. Տ. ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ**
(Նախագահ Հայ կամ. եւ Մարտիկներու Միութեան)
ՆԻՒԹ՝ Ֆրանսայի մէջ Հայերու զինուորագրութեան եւ օրուան քաղաքական հարցերու շուրջ:
Ներկայ կ'ըլլան Տէսինի Les Médaillés Militaires 717րդ Sectionի անդամները
Մուտք 1 ֆրանք:

## Հրապարակային հանդէս Վիէնի մէջ

Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութեան մասնաճիւղի եւ Վասպուրականցիներու կողմէ կազմակերպուած է մեծ հանդէս մը՝ նուիրուած Վասպուրականի հերոսամարտի տարեդարձին, եւ Հայ Կամ. եւ Մարտիկներու մասնաճիւղի բացումին:

Հանդէսը տեղի կ'ունենայ 30 մայիս, կիրակի ժամը 2.30ին, Ռ. Ա. կուսակցութեան սրահին մէջ:

Կը խօսի Գնդ. Տ. ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ

Գեղարուեստական խնամուած բաժին:

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Կրօնական ժողովոյ որոշմամբ եւ ժողովուրդին ընդհ. փափաքին ընդառաջ երթալով, հոգաբարձութիւնս որոշած է 3 յունիս, հինգշաբթի օր հանդիսաւոր յատուկ պատարագ մատուցանել տալ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, այս առթիւ Ս. Հաղորդութիւն պիտի մատակարարուի միայն եւ միայն հայ մանուկներու եւ պզտիկներու, ինչպէս կատարուեցաւ անցեալ տարի՝ երբ Ս. Զատկի հաղորդութիւն:

Կը հրաւիրուին բոլոր հայ հաւատացեալ ծնողքները նկատի ունենալով վերոյիշեալ թուականը եւ իրենց զաւակները առաջնորդել եկեղեցի, մաքուր հագուած եւ ծոմ պահած:

Պատարագը կը սկսի ժամը 10ին:





Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Daguerre, PARIS (14)

